Հ Ե Ր Ո Ս   Տ Ի Ե Զ Ե Ր Ա Գ Ն Ա Ց Ն Ե Ր Ը   Ո Ղ Ջ Ո Ւ Ն Ո Ւ Մ   Ե Ն

# ԹՈՂ ԻՐԱԿԱՆԱՆԱՆ ՁԵՐ

50 և 10:

Առաջին թիվը տարիքն է մեր սոցիալիստական պետության, որը ծնվել է 1917 թվականի մարտերում, երբ «Ավրորայի» համազարկը ազդարարեց նոր, սոցիալիստական դարաշրջանի սկիզբը:

Երկրորդ թիվը տիեզերագնացության կարճ պատմությունն է: Տասը տարի սրանից առաջ մարդկային պատմության մեջ առաջին անգամ սովետական գիտնականները Երկրի ուղեծիր հանեցին արհեստական մի արբանյակ, որը նույնպես նոր դարաշրջանի սկիզբը հանդիսացավ: Անցած տասնամյակում տիեզերագնացության ասպարեզում փիթխարի նվաճումներ են եղել, եղել են զարգացման այնպիսի ժամանակահատվածներ, որոնք դարերի են հավասար:

Եվ եթե հապճեպ մի հայացք գցենք այդ տարիների ընթացքում միմյանց հաջորդած տիեզերական իրադարձությունների վրա, ապա դժվար չի լինի նըկատել, որ տիեզերքը նվաճելու գործում սովետական գիտնականները և տիեզերագնացները միշտ էլ առաջիններն են եղել:

Երկրի առաջին արհեստական արբանյակը, Լուսնի հետ առաջին անգամ շփվելը (սովետական վիմպելի Լուսին հասցնելը, առաջին սովետական մարդը տիեզերքում, առաջին միասնական թռիչքը տիեզերքում, առաջին եռեքտեղանի տիեզերանավի թռիչքը, առաջին անգամ տիեզերանավից մարդու տիեզերական տարածություն դուրս գալը, առաջին փափուկ վայրէջքը Լուսնի վրա, Լուսնի առաջին արբանյակը, առաջին գիտական լաբորատորիան Վեներա մոլորակի վրա, յարբանյակների առաջին ավտոմատիկ կցանումը տիեզերական տարածության մեջ:

Այդ ամենը վառ կերպով վկայում են, որ տիեզերական տարածությունը նվաճելու գործում մեր երկիրը առաջատար երկիր է հանդիսանում, որ մեր երկրում աննախընթաց բարձրության է հասել գիտատեխնիկական միտքը:

Մենք, որպես զինվորական մարդիկ, չենք կարող չնշել մեր հրթիռագետների փիթխարի նըվաճումները, նրանց, ովքեր ըստեղծել են այնպիսի հզոր տանող հրթիռներ, որ ընդունակ են տիեզերք դուրս բերելու բազմատոն տիեզերանավեր:

Եվ սովետական ռազմական ուժերի 50-ամյակի տոնակատարության այս օրերին մենք մեծ հպարտությամբ ենք նշում սովետական հրթիռային տեխնի-

Նկ. ԳՐԻԳՈՐ ԽԱՆՋՅԱՆԻ

„ՊԻՈՆԵՐԻ" ԸՆԹԵՐՑՈՂՆԵՐԻՆ





# ԲՈԼՈՐ ԵՐԱԶԱՆՔՆԵՐԸ

կայի հաջողությունները, հաջողությունները այն սովետական հրթիռաձիգների, որոնք զարթուն կերպով պահպանում են մեր մարդկանց խաղաղ կյանքը և պատրաստ են ջախջախիչ հարված հասցնելու ամեն մի ագրեսորի:

Այսօր տիեզերքի պրոբլեմները հետաքրքրում են բոլորին՝ մեծից մինչև փոքրը: Աշխարհում ինչքա՜ն փոքրիկ տղաներ ու պատանիներ կան, որոնք երազում են թռչել տիեզերք, դառնալ տիեզերանավերի հրամանատարներ:

Տիեզերքը յուրացնելու գործում մեծ են մեր հաջողություններն ու նվաճումները, բայց այդ հաջողությունները հեշտությամբ չե՛ն տրվում մեզ: Երկրի արհեստական արբանյակի ամեն մի արձակումին կամ տիեզերանավի թռիչքին նախորդում է քրտնաջան, լարված նախապատրաստական աշխատանք:

Տիեզերագնացը պետք է լինի ֆիզիկապես ուժեղ, կոփված, կարգապահ, համարձակ, անվեհեր, խիզախ և մեծ կամքի տեր մարդ: Այդ հատկությունները դաստիարակվում են դպրոցական նստարանից սկսած, տանը, ընտանիքում, ստադիոններում և սպորտային հրապարակներում, ընկերների շրջանում:

Տիեզերագնացը պետք է լինի բազմակողմանի զարգացած, բանիմաց և կուլտուրական մարդ: Գիտության և տեխնիկայի մեր դարում առանց խոր գիտելիքների դժվար է տիեզերագնաց դառնալ, և ոչ միայն տիեզերագնաց:

Այդպիսի գիտելիքների հիմքը դրվում է դպրոցում, գիտական և ինքնագործ խմբակներում:

Մենք բոլորս չէ, որ եղել ենք Հայաստանում, բայց շատ բան գիտենք աշխատասեր հայ ժողովրդի հին պատմության ու կուլտուրայի մասին, ժողովուրդ, որը սովետական ժողովուրդների եղբայրական ընտանիքում կերպարանափոխել է իր արևաշող հանրապետության դեմքը: Գիտենք Հայաստանի մարդկանց, վիթխարի կառույցների, գիտնականների հայտնագործությունների մասին, գիտենք Երևանի հիանալի ճարտարապետության մասին, աղջիկների ու տղաների և շատ ու շատ ուրիշ բաների մասին: Այս ամենը մեզ պատմել են մեր ընկերները՝ Վալենտինա Տերեշկովան և Անդրիան Նիկոլաևը, որոնք եղել են Երևանում: «...Անմոռանալի օրեր էին, եղբայրական ու սրտագին հանդիպումներ, ջերմագին գրկախառնություններ», — ասում էին մեզ նրանք:

Ինչպես մեր երկրի բոլոր անկյուններում գտնվող հազարավոր մանուկներ, այնպես էլ բազմաթիվ հայ երեխաներ երազում են տիեզերագնաց դառնալ, դառնալ տիեզերքի նվաճողներ: Ուրեմն, սովորեք, սովորեք և սովորեք, ինչպես այդ ավանդել է մեր սիրելի ուսուցիչ և ղեկավար Վլադիմիր Իլյիչ Լենինը:

Սովետական բանակի 50-ամյա փառավոր տարեդարձի այս տոնական օրերին, մենք ի սրտե շնորհավորում ենք Սովետական Հայաստանի կենսախինդ երիտասարդ սերնդին՝ աղջիկներին ու պատանիներին, պիոներներին և դպրոցականներին, հղում ենք նրանց մեր ջերմ ցանկությունները՝ լինել կոմունիզմի խիզախ, նվիրված մարտիկներ:

Թող իրականանան ձեր բոլոր երազանքները:

Սովետական Միության հերոսների՝ տիեզերագնաց-օդաչուների հանձնարարությամբ՝ Ալեքսեյ Լեոնով

# ՆԱՎԱՎԱՐԸ

ԳՈՒՐԳԵՆ ՍՏԱՄԲՈԼՑՅԱՆ

— Ուզում եմ դառնալ անվախ նավավար
Եվ նավով շրջել աշխարհից աշխարհ։ —
Ասաց Սուրիկն ու տաշտակը տատի
Քարշ տվեց մինչև ափը գետակի։

Տաշտակը հրեց, գցեց ջրի մեջ.
— Կլողամ,- ասաց,- ես այսպես անվերջ,





Գետով կլողամ։ Հետո նեղուցով.
Մի ծովից կանցնեմ ես մի ուրիշ ծով...

Շատ թե քիչ այսպես Սուրիկը լողաց,
Մի ջրապտույտ աչքին երևաց,

## ՄԱՐՏԱԿԱՆ ՓԱՌՔԻ

*Սկզբում նրանք քիչ էին, ընդամենը 15-20 հոգի և հայրենի քաղաքի հերոսական անցյալն ուսումնասիրող իրենց ակումբը համեստաբար կոչեցին «Կայծ»։ Բայց շուտով, ինչպես ասում են, կայծից բոց բռնկվեց. ակումբի անդամների թիվը հասավ երեք հարյուրի։ Ստեղծվեց կարմիր հետախույզների ութ ջոկատ։*

*Գնալով ավելի հետաքրքիր ու հրապուրիչ էին դառնում Լենինականի Կրուպսկայայի անվան դպրոցի պատանի տուրիստների հետախուզական արշավները և ընդլայնվում էին նրանց գործունեության սահմանները։ Նրանք մեկնում էին մայիսյան ապստամբության վայրերը, հանդիպումներ կազմակերպում քաղաքացիական պատերազմի հերոսների, Հայրենական պատերազմի մասնակիցների հետ, կազմում զոհված մարտիկների ցուցակներ, ալբոմներ, հավաքում նամակներ, լուսանկարներ... Այդ բոլորը նրանք սիրով ու խնամքով պահում էին դպրոցի դասասենյակներից մեկում, որը այդ նպատակի համար տրամադրել էր նրանց դպրոցի դիրեկտորը։ Շուտով այնքան նյութ հավաքվեց, որ դասասենյակը վերածվեց թանգարանի։ Բայց դա դեռ գործի*



Տաշտակը հոլի նման պտտվեց,
Սուրիկն իր սիրած նավակից զրկվեց։

Մի քիչ կուլ տվեց գետի ջրերից.
Ձեռքերը մի կերպ դուրս պարզեց ջրից,
Մի քեռի հազիվ ափ հանեց նրան։
Գիժ ալիքները տաշտակը տարան...

Բայց Սուրիկն իսկույն տախտակները հաստ
Կապկպեց իրար, պատրաստեց մի լաստ,







Կանգնեց գետափին, նայեց վեր, ու վար
Ու կրկի՞ն կանչեց.

— Ի՞նչ էլ որ լինի,
Պետք է անպայման դառնամ նավավար։

Նկ. ԼԻԴԱ ԽԱՆԱՄԻՐՅԱՆԻ



# Թ Ա Ն Գ Ա Ր Ա Ն

*սկիզբն էր. պատանի հետախույզների ուղեղներում գծագրվում էին նոր, նշանավոր արշավների ծրագրեր։*

*1966 թ. հուլիսին կարմիր հետախույզները բազմօրյա արշավի դուրս եկան հայկական Թամանյան դիվիզիայի հետքերով։ Արշավին սիրով համաձայնեց մասնակցել դիվիզիայի հրամանատարի տեղակալ Երվանդ Կարապետյանը։ Պատանիները խորին ակնածանքով այցելեցին Սովետական Միության հերոս Հունան Ավետիսյանի գերեզմանը, բարձրացան Դոլգայա լեռան կատարը, որտեղ հերոսաբար ընկավ երիտասարդ Հունանը, իր կրծքով փակելով թշնամու գնդացրի հրակնատը։ Այնուհետև բարձրացան Միհրդատ լեռան գագաթը, որտեղ թաղված է Սովետական Միության հերոս Ջահան Կարախանյանը, որի հետ եղբայրական գերեզմանոցում հավերժական քնով քնած են երկու հազարից ավելի փառապանծ հայ մարտիկներ։ Նրանք քաջաբար ընկան գեղատեսիլ Ղրիմի համար մղված մարտերում։*

*Վերադարձին արշավախումբն իր հետ բերել էր հսկայական քանակությամբ ցուցանմուշներ։ Պայթեցված ականներ, ջարդված հրացաններ, զենիթա-*

յին ականատեսների մասին, ժանգոտված ու ծակծկված սաղավարտներ, փամփուշտներ… ո՞ր մեկը թվել… Նրանք հայտնաբերեցին անհայտ կորած հայ զինվորների բազմաթիվ մեդալիոններ։ Պարզվեց, որ դրանցից մի քանիսը իրենց հարազատ Լենինականից մեկնած մարտիկներինն են պատկանել։

Ոչ պակաս արժեքավոր ցուցանմուշներ էին բերում իրենց հետ քաղաքացիական պատերազմների և մեծ Հայրենականի վետերաններից՝ Գայի., Բենյամին Դալստյանի, Մաթևոս Մաղաթյանի, Արամայիս Պողոսյանի և ուրիշների հետքերով գնացող արշավախմբերը։ Շուտով այնքան նյութեր հավաքվեցին, որ դպրոցում հատկացված մեկ դասասենյակն այդ բոլորը ոչ մի կերպ չէր կարող տեղավորել։ Եվ ահա ուսուցչական բազայի միհարկանի շենքը վերածվեց «Մարտական փառքի թանգարանի»։

Չափազանց արժեքավոր, նույնիսկ հազվագյուտ մասունքներ են պահվում պատանի տուրիստների նորաստեղծ թանգարանում։ Այստեղ դուք կտեսնեք քաղաքացիական պատերազմների լեգենդար զորավար Գայի ռազմական հեռադիտակը և անպարտելի սուրը, որով նա ազատագրել է յոթ հարյուր քաղաք և իրեն պսակել անթառամ փառքով։ Այդ անգնահատելի ցուցանմուշները «կարմիր հետախույզները» նվեր ստացան Ուլյանովսկի գավառագիտական թանգարանից, երբ արշավի էին դուրս եկել Երկաթյա դիվիզիայի հետքերով և ուսումնասիրում էին դիվիզիայի փառապանծ զորավար Գայի մարտական ուղին։ Ցուցափեղկերից մեկում դուք տեսնում եք գնդակներից ծակծկված, հողմերից ծվատված, անձրևներից գունաթափված մի դրոշ. դա Ֆրանսիայի պարտիզանական ջոկատներից մեկի դրոշն է, որը ներգաղթելիս բերել է իր հետ պարտիզան Բենյամին Մանուկյանը։ Նայում ես խորին ակնածանքով և, թվում է, թե հիմա այդ



«Կայծ» ակումբի անդամ պատանի [illegible] իր հայտնաբերած սաղավարտը ձեռքին

բզկտված դրոշը լեզու կառնի ու կպատմի քեզ Ֆրանսիայի ազգային հերոս Միսակ Մանուշյանի և իր մարտական ընկերների սխրագործություններից։

Առանձին ցուցափեղկեր են նվիրված Լենինականի հեղափոխական անցյալին, որտեղ շողում են Սարգիս Մուսայելյանի, Բագրատ Ղարիբջանյանի, Եղոր Սևյանի, Արշալույս Փանյանի և Վարդուշ Տարախչյանի լուսանկարները, որոնցից միայն Տարախչյանի հետ են նրանք բախտ ունեցել հանդիպում ունենալու, մյուսները զոհվել են 1920 թվականին։ Տարախչյանին երեխաները լավ գիտեն. նա կոմունիստական կուսակցության անդամ է 1917 թվականից, և վերջերս՝ մեծ Հոկտեմբերի հիսնամյակի առթիվ, նրա կուրծքը զարդարեց Լենինի շքանշանը։

Լենինականցի հայրենասեր պատանիների նախաձեռնությամբ ստեղծված մարտական փառքի սքանչելի մի թանգարան է, որտեղ այցելության են գալիս ոչ միայն մեր հանրապետության, այլև Սովետական



Պատանի տուրիստները իրենց նորաստեղծ թանգարանում

*Միութենան տարբեր վայրերից, նույնիսկ արտասահմանից և հեռանում են անջնջելի տպավորություններով։ Ահա թե ինչ է գրել տպավորությունների մատյանում Մոսկվայի Լոմոնոսովի անվան համալսարանի պրոֆեսոր Մ. Ա. Գանիուսկը. «Այս «Մարտական փառքի թանգարանը» հուշարձանը, ազնիվ նախաձեռնություն է։ Մենք հիացած ենք ակումբի անդամների անձնվեր, անբասիր աշխատանքով։ Կարծում ենք, որ թանգարանը աճել ու դուրս է եկել դպրոցի շրջանակներից և պետք է դառնա Լենինականի քաղաքային թանգարանի մի մասը, տուրիստական կենտրոն»։*

*Հիացմունքի ու գովասանքի խոսքեր են գրել մատյանում և դեռ կգրեն հազարավոր այցելուներ։ Իսկ խիզախ, ջանասեր ու ստեղծագործ պատանի հետախույզները համեստորեն լռում են, իրենց մասին ոչինչ չեն ասում։ Նրանց թվում է, թե արտասովոր ոչինչ չեն արել իրենք, պարզապես կատարել են իրենց հայրենասիրական պարտքը։ Չէ՞ որ հայտնի ու անհայտ հազարավոր խիզախ մարտիկներ, կատարելով այդ նույն սրբազան պարտքը, իրենց կյանքն են զոհաբերել։*

*ՍՈՂՈՄՈՆ ՄԿՐՏՉՅԱՆ*

**Մարտական փառքի արշավ**




1965 թվականի փետրվարի 20-ն էր...

Այդ օրը դրուժինայի խորհուրդը որոշեց վերցնել Հայրենական Մեծ պատերազմում զոհված մարտիկների եղբայրական գերեզմանոցի խնամքի շեֆությունը։ Հաջորդ օրը մենք դրուժինայի մի քանի պիոներների հետ այցելեցինք եղբայրական գերեզմանոց, մաքրեցինք մարտիկների շիրմաքարերը։ Իսկ փետրվարի 23-ին դրուժինայի լավագույն ջոկատները շարվել էին հանդիսավոր տողանի։ Նշում էինք սովետական հզոր ու անպարտ բանակի ծննդյան օրը։

Այդ հանդիսավոր օրը պիոներական կազմակերպության շարքերն ընդունեցինք դպրոցի լավագույն հոկտեմբերիկներին։ Նրանք երդվեցին, որ իրենց կատարած գործերով կնմանվեն ազատության համար ընկած հերոսներին։ Եվ այդ օրվանից մեր դրուժինայում զոհվածների շիրիմներին այցելելը սովորույթ դարձավ։ Մենք ջրում ենք ծառերն ու թփերը, մաքրում շիրմաքարերը և թարմ ծաղիկներ դնում նրանց վրա։

Անցյալ տարվանից այդ բանը սովորույթ դարձավ ամբողջ շրջանի պիոներական դրուժինաների համար։ Հիմա շրջանի բոլոր դպրոցները, ամեն տարի փետրվարի 23-ին այցելում են հայրենիքի փառքի, պատվի ու ազատության համար զոհվածների շիրիմներին և շիրմաքարերը զարդարում ծաղիկներով։

*ԳԱՅԱՆԵ ԿՆՅԱԶՅԱՆ*
*73-րդ դպրոցի դրուժինայի խորհրդի նախագահ*

*Նկ. ՌՈՒԲԵՆ ՄԱՆՈՒԿՅԱՆԻ*






# ՀԱՆԴԻՊՈՒՄ ՋԱՆՆԻ ՌՈԴԱՐԻԻ ՀԵՏ

Նկ. ԱԼԲԵՐՏ ՅԱՐԱԼՅԱՆԻ

Նա անընդհատ շրջապատված էր լրագրողներով, գրչակից ընկերներով, հարցասեր մարդկանցով, դպրոցականներով ու պիոներներով: Ամենուր նա ցանկալի հյուր էր: Չնայած խիստ զբաղված լինելուն, այնուամենայնիվ ժամանակ էր գտնում հանդիպելու պատանի ընթերցողներին, ելույթ ունենալու հեռուստատեսությամբ, պատասխանելու բազմաթիվ լրագրողների հարցերին, կա[illegible]րելու թերթերի ու ամսագրերի խմբագրությունների խնդրանքը: Ջաննի Ռոդարին էր, որ Մոսկվա էր եկել, որպես լավագույն մանկական ֆիլմի միջազգային փառատոնի ժյուրիի անդամ:

— Ես անչափ գոհ եմ սովետական երեխաների ջերմագին ընդունելությունից, — ասում է Ջաննի Ռոդարին: — Ես երջանիկ եմ, որ ինձ վստահել են լինել մանկական ֆիլմերի գնահատողներից մեկը: Ես մեծ հաճույքով դիտեցի մրցանակաբաշխությանը ներկայացված բոլոր ֆիլմերը և

## ՃԱՆԱՊԱՐՀ

ՄԱՐՏԻՆ ԽԱՉԱՏՐՅԱՆ

Ջրո՛ւր եկել է ու լցվել առատ
Տների վրա փողոցում, բակում.
Սպիտակ թիկնոցն իր ուսին առած
Պա՛ն է մտել մեր գյուղը ձորակում:
Գյուղում ամե՛ն ինչ խաղաղ է այնպես
Մի՛նչդեռ արիշ է ձորապռնկին
Այ՛նտեղ բացել են մի արախ ճանդես
Թ՛նդում է շարժը զվարթ աղմուկից:

Ջրո՛ւր բոլորին գաշտ է գարս բերել.
Կա՛նչում են իրար աղջիկ ու տղա.
Սահնակները առած վազում են վերև
Որ ներքև արագ բարձունքից սղղան:
Բայց ճերմակ ծածկոցն ա՛նշիլ ա՛նճամար
Խոր-խոր փոսեր է իր տակը պահել.
Տե՛նես ո՛վ սիոփ սահնակի համար
Ճամփա բացի որ ա՛նվտա՛նգ սահեն:

*որպես ժյուրիի անդամ, որին դա անհրաժեշտ է, և որպես Ջաննի Ռոդարի, որը շատ է սիրում կինեմատոգրաֆիան՝ առհասարակ։*

*Փոքր-ինչ լռելուց հետո նա շարունակում է իր պատմությունը.*

*— Ինչպես աշխարհի գրեթե բոլոր երեխաները, մանկական տարիներին ես շատ եմ սիրել կինոն։ Հիշո՞ւմ եմ, թե ինչքան հաճախ էի գնում եկեղեցական ծիսակատարության, որովհետև այնտեղ կինոյի անվճար տոմսեր էին բաժանում։ Սիրում էի դիտել արկածային ֆիլմեր։ Այդ սերը դեպի արկածային ֆիլմերը պահպանվել է մինչև այժմ։ Ինձ դուր էին գալիս կովբոյների կյանքից նկարները։ Պետք է խոստովանեմ, որ այն ժամանակ չկային հատուկ մանկական ֆիլմեր։ Այդպիսի ֆիլմերի թիվը չափազանց փոքր է նաև այսօր։ Դա այն հիմնական կարևոր հարցերից մեկն է, որը պետք է զբաղեցնի մեծերին։ Ահա թե ինչու ողջունելի է մանկական ֆիլմի միջազգային մրցանակաբաշխության կազմակերպումը, որը, հավանական է, ավանդույթ կդառնա։ Ահա թե ինչու, չնայած շատ զբաղված էի, ես համաձայնեցի մասնակցել այդ փառատոնի ժյուրիին, ահա թե ինչու մենք Մոսկվա ենք ժամանել, ինչպես ասում են, ամբողջ ընտանիքով։*

*Դա իրոք այդպես էր։ «Մոսկվա» հյուրանոցի համարներից մեկում, որտեղ ես հանդիպեցի Ջաննի Ռոդարիին, մեր զրույցին ներկա էին գրողի կինը և տասնամյա դուստրը՝ Պաոլան։ Առիթից օգտվելով ես փոքրիկ Պաոլային մի քանի հարց տվեցի.*

*— Ինչպե՞ս է դուր գալիս Մոսկվան։*

*— Ինչպես Հռոմը։*

*— Ինչպիսի՞ ֆիլմեր են քեզ դուր գալիս.*

*— Արկածային։*

*— Հայրիկիդ նույնպես արկածային ֆիլմեր են դուր գալիս։*

*— Այո, մենք հաճախ միասին ենք դիտում այդ ֆիլմերը, — միջամտում է գրողի կինը։*

*— Պաոլա, իսկ սովետական ֆիլմեր դիտե՞լ ես։*

*— Այո, «Իվան Ահեղը», «Ալեքսանդր Նևսկի»... Ֆեստիվալի օրերին դիտեցի «Փոքրիկ փախստականը» և «Փոքրիկ վրիժառուները»։*

*— Հավանեցի՞ր։*

*— Շատ դուր եկավ։*

*— Իսկ հայրիկիդ դո՞ւր եկան այդ ֆիլմերը։*

*— Նա ժյուրիի անդամ է, իրավունք չունի կարծիք հայտնելու։*

*— Ոչ, այժմ, երբ ֆեստիվալն ավարտվել է, ես կարող եմ կարծիքս հայտնել։ Երկու ֆիլմերն էլ արված են բարձր մակարդակով, երկուսն էլ ես հավանեցի, սակայն առաջին մրցանակը մենք գերադասեցինք տալ սովետա-ճապոնական «Փոքրիկ փախստականը» ֆիլմին, քանի որ նա ավելի է բացահայտում ֆեստիվալի նշանաբանը՝ աշխարհի ժողովուրդների միջև բարեկամության հաստատման ու ամրապնդման գաղափարը։*

*Այնուհետև Ջաննի Ռոդարին խոսում է երեխայի կյանքում մանկական ֆիլմերի մեծ նշանակության մասին։ Նա ափսոսանքով է նշում, որ Արևմուտքի երկրներում քիչ ուշադրություն է դարձվում այս հարցին, որ այնտեղ գրեթե չկան հատուկ մանկական ֆիլմեր։ Նրան հատկապես մեծ գոհունակություն է պատճառում, որ մեր երկրում, վերջին տարիներին մանկական ֆիլմերի ստուդիա է ստեղծվել, որ պատանի հանդիսատեսները հնարավորություն ունեն դիտելու իրենց կյանքից նկարահանված կինոնկարներ։ Ջաննի Ռոդարին հույս է հայտնում, որ փառատոնից հետո, հավանական է, ուրիշ երկրներում, այդ թվում և հարազատ Իտալիայում, ուշադրություն կդարձնեն մանկական ֆիլմերին, որոնք այսօր այնքան անհրաժեշտ են երեխաներին։*

**— Ամենից առաջ մե՛նք ենք իջնում ցած.—**
**Գոչում են անվախ Արամն ու Վահեն**
**Ու սլանում են քամու պես անսանձ.**
**Թողնելով ձյան մեջ երկա՜ր արահետ։**
**Հետո Վաչեն է իջնում անվարան,**
**Ապա Արտակն ու Սեթը միասին.**
**Ու երբ դառնում է ուղին խոր ու լայն՝**
**Զորապյուրնկին էլ ո՞վ կպապսի.**

**Սուրում են ցած ու հաճախ ինձ նայում,**
**Թե՝ տես սահնակով ինչպես կսահեն.**
**Իսկ ինձ մի ուրիշ բան է հմայում՝**
**Այն, որ արեցին Արամն ու Վահեն։**
**Զարթնում է իմ մեջ մի բարի նախանձ.**
**Երբ մեկը կյանքում ճամփա է բացում.**
**Բերկրանք է բերում այդ ճամփով մարդկանց.**
**Լինի մեծ ճամփա, թե փոքրիկ անցում։**



Ջաննի Ռոդարին և նրա դուստր Պաոլան շոգենավի վրա

Հետո նա խոսեց իր ստեղծագործությունների մասին։ Այնուհետև ես Ջաննի Ռոդարիին հայտնում եմ, որ Հայաստանի պատանի ընթերցողները մայրենի լեզվով սիրով կարդում են իտալացի գրողի ստեղծագործությունները, որ Հայաստանում հրատարակվել են «Չիպոլինոն» և նրա մյուս գործերը։

— «Չիպոլինոն» թարգմանված է 28 լեզվով։ Հայերեն թարգմանությունը ես ստացել եմ Երևանից ու, դիմելով դստերը, հարցնում է.

— Ճի՞շտ է, Պաոլա։

Պաոլան գլխի շարժումով հաստատում է հոր ասածը։

— Պատանի ընթերցողներին ամենուրեք, այդ թվում և Հայաստանում, հետաքրքրում է, թե ի՞նչ նոր գրքի վրա եք այժմ դուք աշխատում,— հարցնում եմ ես։

— Միաժամանակ երկու գիրք եմ գրում։ Մեկը մաթեմատիկական տրամաբանությանը վերաբերող պատմվածքների ժողովածու է։ Երկրորդ գրքի հերոսները Մարկո և Միրկո երկվորյակներն են։ «Չիպոլինոն» գրելուց հետո բավական երկար ժամանակ է անցել։ Փոխվել են ժամանակները, փոխվել են երեխաները։ Երեխաների նոր սերունդը իր հետաքրքրություններով, զբաղմունքով զգալիորեն տարբերվում է նախորդ տարիների երեխաներից։ Ուրեմն այսօրվա պատանի ընթերցողին արդեն չի կարող բավարարել «Չիպոլինոյի» լեզուն։ Պետք է գտնել նոր հերոսների նոր լեզուն։ Իսկ միշտ նորը գտնելը դժվարությունների հետ է կապված։

Ովքեր են իմ Մարկոն ու Միրկոն։ Դրանք, ինչպես ասացի, երկվորյակներ են, միշտ միասին են լինում և՛ փողոցում, և՛ տանը, միասին են խաղում, միասին զբոսնում։ Նրանք շատ լավ են «գլուխ հանում» ժամանակակից տեխնիկայից, իրենք միացնում են մագնիտոֆոնը, իրենք ձայնագրում։ Իսկ ինչո՞վ են տարբերվում միմյանցից այդ երկվորյակները, այս հարցը կհետաքրքրի անշուշտ պատանի ընթերցողին։ Նրանք տարբերվում են այն փոքրիկ մուրճիկներով, որոնցից մեկի կոթը սև գույնի է, իսկ մյուսինը՝ սպիտակ։ Նրանք միշտ ճանապարհորդում են այդ

# ՁՅԱՆ ՓԱԹԻԼՆԵՐԸ

ԳՐԻԳՈՐ ԵՂԻԿՅԱՆ

Թիթեռի թևեր առած,
Աստղերի ձևեր առած,
Իջնում են փաթիլները՝
Ջուր դառած կաթիլները։

Իջնում են թել-թել շարով,
Շորորիկ սիրուն պարով,

Նստում են քարին, հողին,
Ցոլցլում, տալիս շողին։

Հյուսում են ձյունե ժանյակ,
Շարում են սառցե մանյակ,
Նախշում են ծառերը մերկ,
Զարդարում արոր ու հերկ։

Նկ. ՌԱՖԻԿ ՀԱԿՈԲՅԱՆԻ

մուրճիկներով, այդ մուրճիկներով էլ պառկում են քնելու։ Միրկոն և Մարկոն՝ անբաժան եղբայրներ են։ Բայց կարևորն այն է, թե նրանք իրենց մանկական ձեռքերով ինչ են կառուցում։ Այստեղ ինձ անշուշտ շատ է հուզում ու զբաղեցնում երեխաների հոգեբանության հարցը, ինչպե՛ս է ձևավորվում նրանց մտածելակերպը, ինչի՛ն են ծառայեցնում նրանք իրենց սև ու սպիտակ կոթերով մուրճերը։

Մենք երկար զրուցեցինք Ջաննի Ռոդարիի հետ։ Ժամանակ այլևս չկար։ Դրսում նրան սպասում էր ավտոմեքենան։ Նա շտապում էր հերթական հանդիպման, իսկ առավոտյան արդեն պետք է թռչեր Հռոմ...

Հրաժեշտ տալով Ջաննի Ռոդարիին, խնդրում եմ ողջույնի խոսք գրել Հայաստանի պատանի ընթերցողներին։ Նա սիրով համաձայնում է։ Վերցնելով նշատետրս, նա գրում է. «Հայ մանուկներին իմ ամենաարտագին ողջույնները։

ՋԱՆՆԻ ՌՈԴԱՐԻ

Մոսկվա, 21. 7. 1967 թիվ»։

Մենք դուրս եկանք հյուրանոցից։ Նրան մոտեցավ մի տարիքոտ ռուս կին.

— Սինյոր Ռոդարի, — ասաց նա, — վաղը թոռնիկիս ծնունդն է։ Ուզում եմ նրան լավ նվեր տալ ծննդյան առթիվ։ Խնդրում եմ երկտող գրեք այս գրքի վրա։ Եվ նա գրողին մեկնեց «Չիպոլինոյի արկածները» ռուսերեն լեզվով։

Ջաննի Ռոդարին նորից վերցրեց մատիտը.

— Խնդրեմ, — ասաց նա։

Ու ինձ թվաց մի պահ, որ այդ շատ պարզ ու բարի մարդը, երբեք, ոչ ոքի չի կարող մերժել, մանավանդ, երբ խոսքը վերաբերում է իր մանուկ բարեկամներին։

ԱԼԲԵՐՏ ԳԱՍՊԱՐՅԱՆ,

«Պիոներ» ամսագրի հատուկ թղթակից

Գիշերն էլ հողմը հանում,
Պարի է նրանց տանում,
Պարում են օդում ցրված,
Խենթուրախ քամուն տրված։

Պարում են, այսպես խաղում,
Շողում են ու ծիծաղում,
Մինչև գա անուշ գարուն՝
Ջուր դառնան, լցվեն առուն։



# ԿՈՏՐՎԱԾ ՍԱՀՆԱԿԸ

ՆԱՆՍԵՆ ՄԻՔԱՅԵԼՅԱՆ

Սարալանջին սպիտակ
Ջյան փաթիլն էր պսպղում,
Առած չմուշկ ու սահնակ՝
Սահում էինք ու սղղում։

Բայց երբ իջավ Սահակը,
Մեր լավ խաղը խանգարվեց։
Նստեց իր նոր սահնակը,
Հետն էլ խոսեց նա մեծ-մեծ։

— Իմ սահնակը տանկ է, տա՜նկ,
Ճամփա՜ տվեք, երեխե՛ք,
Թե որ ընկնեք նրա տակ,
Մեղավոր չեմ, չտխրեք։

Եվ պարծեցավ, և սահեց,
Եվ բղավեց, և ճչաց,
Ո՛չ սահնակին խնայեց,
Ո՛չ էլ իրեն նա խղճաց։

Բախվեց ծառի արմատին,
Պարանի պես ոլորվեց,
Սահնակն եղավ երկու կես,
Ինքն էլ սարից գլորվեց։

Եվ ասացի նրան ես.
— Շատ եմ խնդրում՝ ների՛ր ինձ.
Քո սահնակը կոտրվեց
Երկար լեզվիդ երեսից։




Դ'ԷՐՎԻԼԻ

Նկ. ԱՐՄԻՆԵ ԿԱԼԵՆՑԻ

**Ութերորդ գլուխ**

## ՊԱՏԵՐԱԶՄ

Անտառներում թափառելիս մի անգամ Կրեկի ականջին հասավ ծանոթ մի ձայն: Մեկը ախորժակով ընկույզ էր խժռում: Սկզբում կարծեց, թե ծառի վրա որևէ կրծող կենդանի կա, բայց պահին շատ զարմացավ, երբ վերևում մարդու ոտքեր տեսավ: Կրեկը թաքնվեց թփերի մեջ և ուշի-ուշով հետախուզեց:

Կուշտ ուտելուց և ծառի վրայի ընկույզները հավաքելուց հետո, մարդը ցած իջավ:

Զարմանալի կերպարանք ուներ անծանոթը: Նրա ամբողջ դեմքը մազակալած էր, պարանոցից կախված էր արջի մագիլներից շարված մանյակ: Նա նման չէր լճի բնակիչներին, բայց ո՞վ էր այդ անծանոթը:

Կրեկն ուզեց վազել դեպի գյուղ և հայտնել որսորդներին, բայց խելոքն որոշեց անձամբ պարզել անծանոթի ով լինելը:

Մազակալած դեմքով հսկան, անցնելով բարքաքոտ ափով, զգուշորեն մոտեցավ լճափի եղեգնուտին: Հենց այդ ժամանակ Կրեկը տեսավ, թե ինչպես այնտեղից դուրս եկավ նրա նման մազակալած դեմքով մեկ ուրիշը և միասին անհետացան եղեգնուտի մեջ:

Հիմա ամեն ինչ հասկանալի էր. եղեգնուտում թաքնված մարդիկ թշնամիներ էին, որոնց մասին շտապ պետք էր տեղեկացնել լճի բնակիչներին:

Առաջնորդները երկար ու բարակ խորհրդակցեցին, ապա նրանցից մեկը դիմեց ծերունի Տոհմավագին.

— Քո որդին ոչ միայն խիզախ է, այլև խելացի, եթե նա չլիներ, ապա թշնամին մեզ այսօր անակնկալի կբերեր: Չնայած վտանգը մեծ է, բայց մենք արդեն տեղյակ ենք, իսկ կռվում ով ճանաչում է թշնամուն, նա միշտ հաղթում է:

Կրեկի արարքից հպարտացած՝ Տոհմավագը բարձրացրեց գավազանը և, աջ ձեռքը դնելով պատանու ուսին, շնորհավորեց նրան:

* * *

Իջավ խավար գիշերը: Կանայք և երեխաները թաքնվեցին խրճիթներում, ամենաուժեղ որսորդները խումբ կազմած մոտեցան գյուղի ծայրամասին: Մարտիկների մի այլ խումբ թաքնվեց խրճիթների ետևում: Մարտի համար նախապատրաստված նավակները քողարկվեցին եղեգների խրձերով: Գյուղում կրակը պահպանող պատվավոր պահակ նշանակվեց Ույուգը:

Տիրեց խորհրդավոր, բայց լարված լռություն: Ամենուրեք զինված բնակիչները սպասում էին ավազակներին: Գիշերվա կեսը դեռ չէր հասել, երբ Ույուգը բարձրացրեց ձեռքը: Առաջնորդը տեսնելով պատանու տված ազդանշանը, շշնջաց.

— Թշնամին գալիս է...

Խավարի մեջ երևացին ավազակները: Նրանք ճարպկորեն մեկը մյուսի ետևից բարձրացան տախտակամածների վրա: Ավազակապետը ամբողջ ուժով թռավ դեպի Ույուգը, բայց ճարպիկ պատանին արագ խույս տվեց և մի խուրձ չոր ցախ գցեց կրակին: Կրակը բոցկլտաց: Հուրհրացող լույսը կուրացրեց ավազակապետին, և նա մեխվեց տեղում: Մի ակնթարթում օգնության հասած Կրեկը սուրը խրեց շփոթված ավազակապետի կուրծքը:

Գյուղի ծայրին սկսվեց ահեղ կռիվը: Ավազակները կռվում էին գազանաբար և սկզբում մտադիր չէին նահանջել, բայց զգալով պետի բացակայությունը և լճի բնակիչների համառությունը, հասկացան, որ հաղթանակը անհնարին է: Նրանք փորձեցին տախտակամածների վրայով շարժվել դեպի ափ: Բայց դա չհաջողվեց, որովհետև լճի բնակիչները հասցրել էին ժամանակին բարձրացնել բոլոր կամրջակները:

Ավազակների միակ փրկությունը նավակներն

---

Սկիզբը՝ «Պիոներ» 1967 թ. № № 8, 9, 10, 12, 1968 թ. 1

էին։ Բայց այստեղ էլ նրանց բախտը չբերեց։ Կիրճից հարձակվեցին լճի բնակիչներից ամենաուժեղները։ Այժմ ավազակները ամեն կողմից շրջապատված էին։ Փորձեցին դիմադրել, բայց իզուր. գյուղի պաշտպանները կռվում էին արիաբար։ Լուսադեմին կռիվը վերջացավ։ Լճի բնակիչները խումբ-խումբ գնացին հանգստանալու, իսկ որսորդներից մի քանիսը հավաքեցին թշնամիների զենքերը և նավակներով տարան լճի կենտրոն՝ ջուրը նետելու համար։

Երբ բարձրացնում էին ավազակապետի դիակը, լճի բնակիչների առաջնորդը մոտեցավ, նրա վզից պոկեց արջի ժանիքներից պատրաստված մանյակը և հանդիսավոր նվիրեց Կրեկին։

— Այս թանկագին մանյակը դու ես վաստակել, վերցրու՛, — ասաց նա։

Ծերունի Տոհմապետը համբուրեց պատանու ճակատը։

— Կրեկ, որդի, այժմ դու խիզախ ռազմիկ ես, մենք բոլորս հպարտանում ենք քո քաջագործություններով։

* * *

Ահավոր գիշերին հետևեցին խաղաղ ու հաշտ տարիները։ Հետագայում խիզախ Կրեկը բազմիցս-աչքի ընկավ իր ազնվությամբ և խելացիությամբ։ Լճի բնակիչները նրան սիրեցին ու հավատացին։ Բայց Կրեկը բնավորությամբ միշտ մնաց համեստ և աշխատասեր։

Տոհմապետն ամեն անգամ լսելով կամ սեփական աչքերով տեսնելով Կրեկի անձնուրաց խիզախությունը և համեստությունը, ուրախանում էր և զմայլանում նրան։

Բայց եկավ մի օր, երբ Տոհմապետը մարմնում ինչ-որ տառապանք զգաց։ Նա հասկացավ, որ իր վերջը հասել է։ Ծերունին Դեյին և Ջյուգին հանձնարարեց, որ եթե հետագայում Կրեկը դառնա ցեղի առաջնորդ, նրան ընծայեն տոհմապետության այն գավազանը, որը իր ձեռքում է մոտավորապես հարյուր տարի։

Ծերունի Տոհմապետը այլևս խրճիթից դուրս չեկավ, իսկ մի քանի օր անց մահացավ։

(Շարունակելի)



# ՀԱՆՑԱԳՈՐԾՈՒԹՅՈՒՆ ԵՎ ՊԱՏԻԺ

ԱՆԱՀԻՏ ԲԱԲԼՈՅԱՆ



Հին Երևանի քարքարոտ, նեղ փողոցներից մեկով, զրնգոցով ու աղմուկով անցնում էր քառանիվ ծիասայլը։ Նիհար զամբիկը, բաշը թափահարելով, հազիվ է տանում սայլին դրված նավթի հսկայական տակառը։ Վաղուց ի վեր չյուղված անիվների ճռճռոցից, զանգակների ականջ խլացնող աղմուկից խախտվում է նեղ փողոցի մշտական անդորրը...

— Ծլը՜նգ, ծլը՜նգ, ծլը՜նգ։

— Նավթը եկավ, նավթը եկավ. —փայտյա խարխուլ պատշգամբներից, նեղլիկ լուսամուտներից, բակերից և ամեն կողմից լսվում են ձայներ։ Եվ մարդիկ, ով ինչ հասցնում է գտնել՝ նավթաման, դույլ, անգործությունից ժանգոտված հին, կանթավոր պղինձ, առանց ուշադրություն դարձնելու հագուստին, նետվում են փողոց։

Կառապանը, որ սովորություն ունի բռնել ձիու երասանակներից և քայլել առջևից, կանգնում է փողոցի մեջտեղում, ձիու ճակատից կախում զարու տոպրակը, ապա հագնելով ռետինե պատառոտված ձեռնոցները, մոտենում է տակառի ծորակին։

Նավթը մեր փողոցն է «գալիս» շաբաթը մեկ անգամ միայն ուրբաթ օրը, այդ պատճառով էլ մեր թաղի բնակիչներն այդ օրը աշխատում են որքան կարելի է շատ նավթ վերցնել։

Մոտենալով սայլին, մարդիկ լուռ հերթի էին դնում իրենց ամանները ու հեռանում։ Դե, ամեն մեկն իր գործն ունի. կոշկակարը կիսատ է թողել կրունկի վերանորոգումը, դերձակը՝ վերարկուի թևքը, սափրիչը հաճախորդի երեսը պիտի սափրի վերջացնի... Շատերը իրենց փոխարեն հերթի մեջ են թողել իրենց երեխային կամ մի որևէ առարկա՝ քար, շիշ, կավե կուժ, դեն գցելու աման։

Մեր ընտանիքից, սովորաբար նավթ բերելու գնում էր մայրիկս։ Իսկ այսօր հակառակի պես, նա լողացնում է փոքրիկ եղբորս՝ Մաթևոսին... Այդ պատճառով էլ, լսելով փողոցի աղմուկ-աղաղակը, դիմում է ինձ ակներև կշտամբանքով.

— Ա՛յ տղա, անպիտան, ինչ ես ականջներդ կախ գցել... Թե՞ վաղը ոչինչ չես ուտելու։ Դե շու՛տ, վերցրու նավթամանն ու վազ տուր, քանի չի վերջացել։ Շու՛տ, շու՛տ։

Ու ես վազ եմ տալիս.

Տակառի մոտ կանգնած են երկու-երեք կին և ուրիշ ոչ ոք, եթե, իհարկե, չհաշվենք տարբեր չափի, ձևի ու գույնի ամանների երկար շարանը, որոնցից յուրաքանչյուրը փոխարինում է մի ընտանիքի։ Քիչ այն կողմ, կավահողից շինված տափակ տների երկայնքով մեկ կանգնած են մարդիկ, որոնք ձեռքերը թափահարելով տաք-տաք վիճում են։

Մոտենալով հնոտիների խայտաբղետ այդ ցուցահանդեսին, ես սկզբում գլխի չեմ ընկնում, թե ինչումն է բանը։ Զարմանում եմ, թե ինչու եմ զուր տեղը գլխապատառ վազել այստեղ...

Հետո... Հետո գժությունս բռնում է ու ոտքերով ֆուտբոլի գնդակի պես ցիրուցան եմ անում հերթում շարված միանգամայն խաղաղ, իրենց դիրքերը չլքող բոլոր դույլերն ու պուլիկները և մոտենում նավթավաճառին...Բայց էլ որտե՜ղ...

Իրենց դռների ու լուսամուտների մոտ հավաքված մարդիկ, որոնք, թվում էր խաղաղ զրուցում էին իրար հետ, մի ակընթարթում սարից գլորվող հեղեղի պես գալիս են վրաս...

Դե փախի, որ կփախչես... Փախչում եմ մարդկանցից, բայց պատժից փախչել չկարողացա։

«Զարությունը անպատիժ չի մնում» — ասում էին մեծերը։ Չէի հավատում։

Ահա նստած եմ դատարկ նավթավառի մոտ, նրա պղնձյա հայելու մեջ տեսնում եմ իմ կերպարանքի աղոտ անդրադարձումը, և ականջներիցս ոչ մի կերպ չի հեռանում նավթասայլի զնգզնգոցը։

Իսկ նստել այդպես, առանց թեյի և տաք կերակրի՝ իմ կարծիքով այնքան էլ դժվար բան չէ... Հարկավոր է սպասել ընդամենը... մեկ շաբաթ։

# ԳԱՅԼԸ ԵՎ ՆՐԱ ԸՆԿԵՐՆԵՐԸ



Նկ. ԱԼ. ԳՐԻԳՈՐՅԱՆԻ

ՎԱՐՈՒԺԱՆ ՆԱԼԲԱՆԴՅԱՆ

Կար մի ժամանակ, երբ գայլն ուզում էր ընկեր ունենալ: Եվ նա ընկերացավ Նապաստակի հետ: Լավ-վատ ընկերություն արեցին, մինչև այն օրը, երբ մի օր, անտառում զբոսնելու ժամանակ մի կասկածելի չխկոց լսեցին: Նապաստակն ականջները տնկեց, գլուխն առավ ու փախավ հակառակ ուղղությամբ: Գայլն էլ մի քիչ ուշացումով և ավելի դանդաղ, բայց և այնպես, հետևեց ընկերոջը: Գայլը հասավ նրան, և երկուսն էլ կանգ առան:

— Լավ պրծանք,— ասաց Նապաստակը:

— Հը՞,— չլսելու տվեց գայլը:

— Ասում եմ՝ լավ պրծանք,— կրկնեց Նապաստակը և տեսնելով ընկերոջ վատ տրամադրությունը՝ ավելացրեց.— Ճիշտ է, երևի բոլորն էլ գիտեն. ես... ես այնքան էլ... քաջ չեմ...

— Այնքան էլ... քաջ չեմ...— նրա տոնազն արեց գայլը,— ուղղակի ասա. որ վախկոտ ես, էլի...

Նապաստակն ամոթից լուռ մնաց: Գայլը համարձակ ասաց.

— Ես քեզ հետ ընկերություն չեմ անի: — Եվ մտածեց. քանի որ իրենք այլևս ընկերներ չեն, շատ հնարավոր է. որ մի օր Նապաստակը թաքուն վնասի իրեն, ավելի լավ չէ՞... Այստեղ գայլի միտքը կանգ առավ. ատամներն աշխատեցին, և նա կերավ իր ընկեր Նապաստակին:

Մի ամիս չանցած. գայլը հանդիպեց արջին և բարեկամացավ նրա հետ: Սա վախկոտ չէ, հետը կարելի է ընկերանալ: Բայց մի ձախորդ օր, տեսեք թե ինչ պատահեց: Արջը մեղվի փեթակ էր գտել: Առանց երկար-բարակ մտածելու թաթը մըտցրեց փեթակի մեջ: Մեղուները վրա տվեցին և մի կծել է. որ կծում են: Արջը վախեցած ետ-ետ գընաց և իր հսկա մարմնի ծանրությամբ տրորեց գայլի թաթը: Սա մի ոռնոց գցեց, այնպես է ոռնում. որ թնդացնում է անտառը: Ի վերջո գայլը՝ կաղեկաղ. արջը՝ ափալ-թափալ, երկուսն էլ փախան: Երբ շունչները ետ բերելու համար մի ապահով տեղ հանգստանում էին, գայլն ասաց.

—Սա՞ էր քո արածը:

— Ներողություն,— ասաց արջը՝ կծոտված քիթը տրորելով:

— Ինձ հաշմանդամ դարձրեց, մի ներողությունով էլ պրծավ. – վրդովվեց գայլը:

— Բա ի՞նչ անեմ,— շվարեց արջը,— չէ՞ որ. եթե մեղր ճարեի, քեզել էլ էի տալու...

Գայլը մտածեց, որ եթե վեճը երկարի. բանը կռվի կհասնի: Արջն էլ հո Նապաստակ չէ, որ գըցես ատամիդ տակ: Արջը արջ է, որ թաթով տըվե՜ց... Գայլը ձևացավ, թե հաշտվել է, և երեք շաբաթ կաղեկաղ հետևեց նրան: Շուտով թաթը լավացավ. բայց քենը մնաց գայլի սրտում: Նա համբերեց, մինչև որ ձմեռն եկավ, ձյունը նստեց, և արջն իր բնում քուն մտավ: Արջն իր քնի մեջ



առաջին երազը դեռ չէր տեսել, երբ գայլը հարձակվեց և տեղն ու տեղը հոշոտեց նրան:

«Արջը կդադարի բարեկամ լինելուց, թշնամի կդառնա. ավելի լավ չէ՞ ինձ համար ուտելիք դառնա», — ուտելուց հետո՝ շրթունքները լիզելով ծիծաղում էր գայլը: Նրա գլխի փոխարեն փորն էր մտածում, և ընկեր ասելով նկատի ուներ նրան, ում կարելի է ուտել:

Ինչևէ. ձմեռն անցավ, եկավ գարուն: Գայլը հանդիպեց կրիային: «Սա մեղր չի սիրում, մեղուների հետ առնելիք-տալիք չունի, զգույշ է և նրբանկատ», — մտածեց գայլը և առաջարկեց բարեկամանալ:

Ես իմ ընկերներին սրտիս մոտ եմ պահում, — աղվեսի լեզու թափեց գայլը, — սրտիս մոտ, — կրկնեց նա և մտածեց՝ «... ստամոքսիս մեջ»...

Կրիան համարձակություն ունե՞ր, որ հրաժարվեր գայլի բարեկամությունից: «Էհ, ի՞նչ վնաս, թող բարեկամ լինի», — մտածեց կրիան և բարձրաձայն ասաց.

— Մեծ ուրախությամբ...

Բայց այդ ուրախությունը երկար չտևեց: Մի օր գայլն ասաց կրիային.

— Ես մի քիչ հանգստանամ՝ ուժ առնեմ, դու գնա տես հովվի շները քնա՞ծ են, թե չէ և ինձ շուտ լուր հասցրու. այսօր ոչխարի միս ուտելու ախորժակ ունեմ:

Գայլը կողքի վրա պառկեց, կրիան էլ գնաց... Գայլն սպասեց, սպասեց, վերջը համբերությունը հատավ: Նա տեղից վեր թռավ ու գնաց դեպի ոչխարի հոտը: Արահետի ծայրին նա տեսավ, որ կրիան ճանապարհի կեսն անգամ չի անցել: «Ըսպասիր, հիմա կվերադառնամ, սևդ կտամ», — քթի տակից մրթմրթաց գայլը և առաջ թռավ: Բայց արի ու տես, որ գայլի բախտը չբերեց: Հովվի գամփռ շները այնպես հարձակվեցին նրա վրա, որ նա մազապուրծ, արնակոլոլ ետ փախավ: Ետ փախավ և իր ամբողջ բարկությունը թափեց իր ընկեր կրիայի գլխին.

—Ծույլ անպիտան, քո պատճառով ոչ միայն զրկվեցի ոչխարի մսից, այլև..

Եվ ըստ իր սովորության գայլն ուզեց ընկերոջը տեղափոխել իր սրտին մոտիկ ստամոքսի մեջ, բայց կրիան ապաստանեց իր պատյանում, և գայլը նրա պատյանի վրա ջարդեց իր ատամներն ու ցավից շան քոթոթի պես վնգստաց: Այդ օրը նա ուժասպառ էր եղել ու խեղճացել էր:

Այսպես անցավ որոշ ժամանակ, բայց... եթե պատմեմ գայլի և նրա բոլոր հերթական ընկերների արկածները, հեքիաթս հազար ու մի րոպե կտևի: Դուք կլսեք, կլսեք, ոչ կուտեք, ոչ կքնեք և ձեր ծնողներին կբարկացնեք: Դրա համար էլ ես հեքիաթը կարճ կապեմ: Ուրեմն գայլը ում հետ էլ ընկերություն արեց, տեղի-անտեղի բարկացավ, չհավանեց, կամ ընկերոջ գլուխը կերավ, կամ չկարողացավ, վերջն էլ մնաց մեն-մենակ, առանց ընկեր-բարեկամի: Էհ, մի օր էլ հիվանդացավ, խնամող էլ չուներ, մենակ-անտեր մահացավ, այս հեքիաթն էլ վերջացավ:

# ԱՆԱՊԱՏԻ ԳԵՂԵՑԿՈՒՀԻՆ




Անապատ՝ նշանակում է անկենդանություն, մերկ և այրող գորշ ավազի ծով ամայություն, լազուր երկնակամար՝ արևի կիզիչ ճառագայթներով, ավազից հորձանքով վեր ելնող օդի շիկացած զանգվածներով: Սակայն չոր ու անկենդան թվացող անապատի ընդերքում ջուր կա ամբարված: Այդ ջուրը երբեմն բնական ճանապարհով, իսկ հաճախ էլ արհեստական եղանակով՝ արտեզյան ջրհորների միջոցով դուրս է գալիս մակերես ու կենդանություն տալիս շրջապատին: Հենց մակերես ելնող ջրի շուրջն էլ գոյանում է կանաչ մանյակ՝ օազիս:

Իսկ ի՞նչ բույսեր են աճում օազիսում:

Սովորաբար, երբ խոսք է լինում օազիսային բուսականության մասին, մարդիկ պատկերացնում են արմավենին, որին պետք է առատ ջերմություն և ջուր: Արաբները արմավենու մասին ասում են. «Օազիսի թագուհին սիրում է իր ոտքերը լվալ ջրում, իսկ գլուխը՝ արևի ճառագայթների կրակում»:

Արմավենին շքեղ ծառ է. ունի բարձր, ուղիղ բուն և հովհարաձև բացված կատար: Հրապուրվելով այդ գեղեցկությամբ՝ մարդը նրան անապատից բերել է և ընտելացրել տնային պայմաններին: Արմավենին դիմացկուն ծառ է. անապատում ապրում է 150—200 տարի: Դրանից հետո էլ նա չի ոչնչանում: Ավազի տակ գտնվող արմատներից նորից ու նորից ծլում և աճում են երիտասարդ արմավենիներ՝ փոխարինելով ոչնչացվածներին:

Սակայն, արմավենու միայն գեղեցկությունը չէ, որ գրավում է մարդուն: Նա օազիսային բնակչի ապրուստի գրեթե միակ աղբյուրն է, հույսն ու հավատը: Կան արմավենու շատ տեսակներ. նրանց մեջ իր առավել օգտավետությամբ աչքի է ընկնում փյունիկյան արմավենին: Այդ տեսակի արմավենու բնի երկարությունը հասնում է 20-40 մետրի, իսկ բնի շրջագիծը կազմում է շուրջ մեկ մետր: Այդպիսի ծառերից յուրաքանչյուրը տալիս է 100-250 կգ պտուղ: Նրա պտուղները շատ հյութալի են ու քաղցր, պարունակում են շաքար՝ 70, սպիտակուց՝ 3, ճարպ՝ 2-5 տոկոս և այլ սննդարար տարրեր: Մարդիկ օգտագործում են ոչ միայն արմավենու պտուղը, այլև նրա կորիզը՝ սուրճի փոխարեն: Արմավենու պտուղները կանաչ ժամանակ շատ ամուր են և փղոսկրի նման շքեղ. դրանցից պատրաստում են զարդեր ու պաճուճանքի առարկաներ:

Փյունիկյան արմավենու օգտակարությունը դրանով չի սպառվում: Նրա ցողունից ստանում են մինչև 250 կգ. քաղցր հյութ: Դրա համար ճեղքում են կեղևը և ներքևի մասում դույլ կախում, ուր հավաքվում է ծառից հոսող քաղցր հյութը: Այդ հեղուկից դեռ վաղ ժամանակներից սկսած պատրաստում են արհեստական մեղր, շաքար, արմավի գինի, որը հայտնի է «լակբի» անունով:

Արմավենին հաճախ աղքատների համար ծառայում է որպես հացատու ծառ: Նրա միջուկից ստանում են փոշի և օգտագործում ալյուրի փոխարեն: Բացի այդ, անապատի բնակիչները նրա ցողուններից կառուցում են իրենց բնակարանները, իսկ տերևներով ծածկում առաստաղը: Արմավենու տերևները և բնափայտը թելատու են. Նրանցից ստանում են կոշտ թել և գործում զանազան պարաններ ու տոպրակներ:

Արմավենու նույնիսկ ստվերը, բացի զովություն տալուց, ունի տնտեսական, նշանակություն: Նրա ստվերում ոչ միայն մարդիկ են զովանում, այլև մշակում են բանջարեղեն, խաղողի վազեր, ցիտրուսներ, որոնք այլ կերպ կչորանային արևի այրող ճառագայթների տակ:

Հին Եգիպտոսում արմավենին ծառայել է նաև որպես օրացույց: Նրա տերևները աճում են ուղիղ մի ամսվա ընթացքում և ճիշտ այդքան ժամանակում էլ մահանում, ընկնում: Մարդիկ նրա միջոցով իմանում էին ամիսների հերթափոխությունը: Ընկած տերևի դիմաց աճում է մի նոր տերև և ծառը մշտապես դալար է մնում:

Ո՞ր երկրներում է տարածված արմավենին:

Այն հիմնականում հանդես է գալիս մերձարևադարձային երկրներում: Ամենից շատ հանդիպում է Մերձավոր արևելքի և Աֆրիկայի հյուսիսային շրջանի արաբական երկրներում: Միայն Իրաքում արմավենու ծառերի թիվը հասնում է 30 միլիոնի:







Այս երկիրը արմավի արտադրությամբ աշխարհում գրավում է առաջին տեղը։ Այստեղի արմավը մեզ մոտ հայտնի է «Բաղդադի խուրմա» անունով։

Սովետական Միությունում արմավենի աճո՞ւմ է արդյոք։

Արմավենու աճման համար ջերմաստիճանը 2—3°-ից ցածր չպետք է լինի։ Մեր հայրենիքում ամենատաք շրջաններ են համարվում Միջին Ասիան և Անդրկովկասի հարավ-արևելյան մասը։ Սակայն այստեղ ձմռանը ջերմաստիճանը իջնում է մինչև —10°-ի։ Այդ է պատճառը, որ երկար ժամանակ փորձ չէին անում մեզ մոտ արմավենի աճեցնել։ Առաջին անգամ 1935 թ. Թուրքմենիայի Կըզըլ-Ատրեկի շրջանում տնկեցին Իրանից բերած արմավի 200 ծառ և ցանեցին 4 հազար սերմ։

Թեև արմատակալել էին դրանք, բայց նույն տարվա ձմռանը բոլորը ցրտահարվեցին և չորացան։ Միայն սերմերից ծլած 700 ծառ հաջողությամբ շարունակեց աճել։ Չորս տարի հետո նրանք ծաղկեցին, բայց պտուղները չհասունացան, մնացին կանաչ։ Հաջորդ տարվա պտուղները համեմատաբար հասուն էին։ Ահա այդ տեղական սերմերից ցանած արմավենիներն էլ սկսեցին նորմալ աճել։ Այդ համառ աշխատանքը տվեց դրական արդյունք. ունեցանք սովետական արմավենիներ։

Սակայն 1949 թվականին երկարատև ձմեռ եղավ՝ 13° սառնամանիքով։ Արմավենիների տերևները ցրտահարվեցին և թափվեցին։ Թվում էր ամեն ինչ իզուր անցավ։ Բայց ահա ապրիլի վերջերին անտերև ցողունները բողբոջեցին և ծաղկեցին, իսկ աշնան մոտ դուրս եկան նաև տերևներ, որոնց երկարությունը հասավ մի քանի մետրի։ Այդ տարի որոշ ծառերից 50-ական կիլոգրամ բարձրորակ արմավ հավաքեցին։

Այժմ Կըզըլ-Ատրեկում աճում են հազարավոր երիտասարդ արմավենիներ, որոնց մեջ կան 20-23 տարեկան ծառեր՝ շուրջ 10 մետր բարձրությամբ և մեկ մետր շրջագծով։

Դոցենտ Գ. Ե. ԱՎԱԳՅԱՆ

# ԼՍԵՑԵ՛Ք, ԽՈՍՈՒՄ ԵՆ ԹՄԲՈՒԿՆԵՐԸ



Երկու հազար տարի առաջ Աֆրիկայում թմբուկները 400 մղոն հեռավորության վրա ըշտապ լուր էին հաղորդում Աշանտի ցեղերին՝ մարտիկներին կոչելով պաշտպանել սահմանները։ 17-րդ դարում Կոնգոյում թմբուկները թագավորի հրամանը արագ տարածում էին երկրի ամենահեռավոր անկյունները։

Աֆրիկայում շատ են տարածված թմբուկները։ Այնտեղ ո՛չ հարսանիքները, ո՛չ երեխաների ծնունդները և ո՛չ էլ հուղարկավորությունները առանց թմբուկի չեն լինում։ Նույնիսկ որոշ հիվանդություններ հեքիմները «բուժում» են թմբուկի սուր և տագնապալի ձայներով։ Արևադարձային Աֆրիկայում յուրաքանչյուր գյուղ ունի մեկ կամ մի քանի ընդհանուր թմբուկներ։ Կոնգոյում և Անգոլայում թմբուկները կոչվում են լոկոլե. Գանայում՝ դոնդոն, Նիգերիայում՝ գանգան, Տոգոյում՝ լեկլեու։ Նրանցից յուրաքանչյուրը ձայնի տարբեր բարձրություն ունի։

Աֆրիկացիները, երբ սկսում են նոր գյուղ կառուցել, նախ թմբուկն են պատրաստում և հետո հյուղակներ կառուցում։

Ասում են, թե Աֆրիկայում թմբուկները խոսում են։ Նրանց պատմությունը մարդիկ լսում են շատ հեռվից։ Դրա պատճառը, իհարկե, աֆրիկյան յուրօրինակ լեզուներն ու բարբառներն են։ Օրինակ, հայերենում և եվրոպական բոլոր լեզուներում ինչպես էլ որ բառը արտասանենք՝ բարձր, թե ցածր, կցկտուր, թե սահուն, միևնույնն է, այն կունենա մի իմաստ։ Իսկ աֆրիկյան լեզուներում այդպես չէ։ Այնտեղ խոսքն ու երաժշտությունը խիստ կապված են իրար։ Միևնույն բառը կարող է ունենալ տարբեր իմաստներ՝ նայած առանձին

վանկերի և ամբողջ բառի արտասանության ռիթմի և եղանակի։ Իսկ խոսող թմբուկները հենց այդպես են «արտասանում» բառերը։ Շատ նախադասություններից կազմված երկար հաղորդագրությունները աֆրիկացին հասկանում է նույնքան լավ և հեշտ, որքան հեռագրավարուհին Մորզեի այբուբենը։ Թմբուկների ավելի քան հարյուր տեսակներ կան Աֆրիկայում, սկսած ամենափոքրերից՝ մի քանի սանտիմետր տրամագիծ ունեցող չխչխկանից մինչև հսկայական, երկումետրանոց նգոմները։

Իսկ ամենատարածվածները միջին չափի մեկ թմբկաթաղանթով թմբուկներն են, որոնք Եվրոպայում հայտնի են տամ-տամ անունով։ Բուշմենների և հոտենտոտների մոտ թմբուկի դեր է կատարում հնդկեղեգի ծղակտորը կամ էլ փայտե փորված ամանը։

Ամանի մեջ լցնում են մի քիչ ջուր, իսկ վզիկը փակում են թրջված, ծգված ոչխարի կաշիով։ Հարավային և Կենտրոնական Աֆրիկայում ապրող բանտու ցեղերի մոտ թմբուկը փափուկ փայտից փորված հսկայական կաթսա է՝ նգոմը։ Նգոմ թմբուկի մեջ դնում են մի քանի քար՝ արձագանքի համար։

Մեծ թմբուկները խփում են մահակներով, իսկ փոքրերը՝ ձեռքերով։

Աֆրիկայում հարգարժան և ազդեցիկ մարդիկ ունեն հատուկ «թմբուկային» անուններ, որոնք ժառանգաբար հորից անցնում են որդուն։

Թմբուկներ պատրաստող հատուկ վարպետները, որոնք թափառում են մի գյուղից մյուսը, ամենուր հանդիպում են սրտաբաց ընդունելության։ Աֆրիկայում թմբուկները թանկ արժեն։ Ամենահասարակ նգոմն արժե մի եզ։ Շատ սերունդներ նույնիսկ աստվածացրել են թմբուկները և նրանց զոհեր են մատուցում։

Ուրեմն, հասկանալի է, որ Աֆրիկայում մեծ հարգանք են վայելում ոչ միայն թմբուկները, այլև լավ թմբկահարները։ Այնտեղ շատ հաճախ պալատական թմբկահարները նստում են ամենաբարձրաստիճան պաշտոնյաների կողքին։

Բայց լավ թմբկահար դառնալու համար պետք է շատ երկար սովորել։

Օրինակ, Զամբիայում հայրերը, որդիների դեռ վեց տարին չլրացած՝ նրանց համար գնում են առաջին թմբուկը։

Սկզբում երեխան տանը սովորում է խփել ամենապարզ ռիթմերը, հետո սովորում է թմբկահար-մասնագետի մոտ։

Իհարկե, ռադիոն, հեռագիրը և հեռախոսը ավելի ու ավելի են տարածվում Աֆրիկայում, բայց թմբուկների ռիթմիկ խոսակցությունը այժմ էլ կարելի է լսել Կոնգոյի և Նիգերիայի ափերին, Սուդանի տափաստաններում և Անգոլայի ջունգլիներում։

## «ԱՄԵՆԱՓՈՔՐԻԿ ՆԿԱՐԸ ԱՇԽԱՐՀՈՒՄ»

Աշխարհի ամենափոքրիկ նկարը, որ նկարված է յուղաներկով, մեկ քառակուսի միլիմետր է։ Այն պատկերում է խալացի պոետ Դանթեին։ Արվեստի այդ մինիատյուր ստեղծագործությունը գտնվում է Բեռլինի պատկերասրահում, և հասարակությանը ցուցադրվում է միայն միկրոսկոպով։ Այդ փոքրիկ նկարը ստեղծել է տաղանդավոր Հանս Յոահիմ Բարրիկովսկին։

## ԳԵՂԱՐՎԵՍՏԱԿԱՆ ԳՈՐԾԵՐԻ ՈՂԲԵՐԳԱԿԱՆ ՃԱԿԱՏԱԳԻՐԸ

Սեն-Ռեմի դը Պրովանսում (Հարավային Ֆրանսիայում) մահվանից երկու տարի առաջ, լինելով ծանր հիվանդ, Վան-Գոգը շարունակում էր նկարել։ Իր նկարների մի մասը նա նվիրում է բժիշկ Ռեյին։ Բայց վերջինիս որդին այդ նկարները օգտագործում է որպես թիրախ՝ նետահարելու համար։ Միայն մի նկար է փրկվել այդ բախտից։

Դա «Բժիշկ Ռեյի» հայտնի դիմանկարն է, որն ունի իր պատմությունը։ Նկարը Ռեյին դուր չի գալիս, և նա դրանով փակում է հավանոցի անցքը, որպեսզի ժանտաքիսները չկարողանան հավ գողանալ։ Տասը տարի անց մի արվեստասեր խնդրում է նրան իրեն վաճառել այդ նկարը։ Զարմացած Ռեյը խնամքով մաքրում է կտավը և անհամարձակ, շատ ցածր գին է խնդրում, որը նրան թվում է առասպելական։

Այժմ այդ նկարը գտնվում է Մոսկվայում, Պուշկինի անվան թանգարանում։

Կենդանության օրոք Վան-Գոգի ստեղծագործությունները ճանաչում չեն գտնում։ Հեռանալով Նյուենենից, իր սիրելի Հոլանդիայից, նա մոր մոտ է թողնում բազմաթիվ նկարներ։ 1886 թվականին մայրը մեկնում է փոքրիկ Բրեդ քաղաքից

և իր ծանոթ մսագործին հանձնարարում է պահել այդ նկարները:

Անցնում են տարիներ: 1902 թվականին մսագործը վաճառում է իրեն ոչ պիտանի իրերը մի հնավաճառի, որը հետո այրում է դրանց մեծ մասը, իսկ մնացածը բարձում է մի սայլի և ճանապարհ ընկնում՝ գնորդներ գտնելու նպատակով: Բայց ոչ ոքի նրա ապրանքները չէին գայթակղում: Բարեբախտաբար Մուվեն անունով մի դերձակ նրանից գնում է պատահաբար կրակից փրկված բոլոր նկարները: Եվ դրա շնորհիվ մեզ են հասել Վան-Գոգի Հոլանդիայում ստեղծած համարյա բոլոր ստեղծագործությունները: Հազվադեպ չէ, որ մեծ նկարիչների և նրանց ստեղծագործությունների ճակատագիրը լինում է ողբերգական: Եթե թանգարաններում ցուցադրված նկարները կարողանային խոսել, ապա մենք նրանցից կլսեինք շատ տխուր և շատ հետաքրքիր տեղեկություններ:

* * *

Ֆրանսիացի նկարիչ Պոլ Գոգենի ստեղծագործություններից շատերի ճակատագիրը նույնպես եղել է ողբերգական: Բրետանից մեկնելուց առաջ, որտեղ նա ապրում էր Պոնտ Ավենի հյուրանոցներից մեկում, նկարիչը հյուրանոցի տնօրենին է նվիրում չորս նկար: Այն ժամանակ Պոլ Գոգենը նույնպես ճանաչված չէր: Եվ երբ շատ տարիներ անց, մի կոլեկցիոներ մեկնում է Պոնտ Ավեն այն հույսով, թե կկարողանա հայտնաբերել Պոլ Գոգենի գործերից, նա սարսափով իմանում է, որ հյուրանոցի տնօրենը նկարչի կտավներն օգտագործել է գորգի փոխարեն՝ ոտքերը մաքրելու համար:

## ՀԱՎԱՏԱՐԻՄ ԲԱՐԵԿԱՄԸ

*Ֆրանսիացի հռչակավոր նկարիչ Օնորե Դոմյեն իր կյանքի վերջին տարիներին ապրում էր նյութական ծանր պայմաններում և ստիպված էր շատ ու շատ աշխատել: Նա հաճախ ըստիպված էր նկարել գիշերները՝ լամպի լույսի տակ և առանց հանգստանալու: Այդ ունեցավ իր ծանր հետևանքները: Նկարիչն սկսեց կուրանալ: Նա արդեն չէր կարող պատվերներ կատարել և մնաց առանց վաստակի:*

*Դոմյեն թողեց Փարիզը և գնաց ապրելու մայրաքաղաքից ոչ հեռու Վալմոնդուա գյուղաքաղաքում: Այստեղ նա ստեղծեց իր հռչակավոր «Դոն կիխոտները», թափառաշրջիկ դերասանների կերպարները, որոնք ներծծված են ցնցող մարդասիրությամբ և կախարդիչ արվեստով: Սակայն դրանք նրա վերջին ստեղծագործություններն էին: Աչքերը վատ էին տեսնում, բժիշկները արգելեցին նկարել, և մեծ նկարիչը մնաց առանց ապրելու միջոցների:*

*Տանտերը նրան սպառնում էր դուրս անել, եթե նա չվճարի պարտքերը:*

*Նրա արվեստակից և ոչ արվեստակից բարեկամներից շատերն արդեն չկային, իսկ մյուսները երես էին թեքել նրանից:*

*Դոմյեի բարեկամներից միայն նկարիչ Կորոն էր մնացել հավատարիմ ու սրտակից:*

*Կորոն միշտ ասում էր. «Եթե ուզում ես կյանքում երջանիկ լինել, զբաղվիր նկարչությամբ»:*

*Եվ ահա մի առավոտ Դոմյեն նամակ ստացավ.*

*«Իմ վաղեմի բարեկամ, ես Վալմոնդուայում մի փոքրիկ տնակ ունեմ, որն ինձ բոլորովին պետք չէ: Իմ գլխում մի միտք ծագեց՝ այն նվիրել քեզ: Եվ գտնելով, որ այդ հաջող միտք է, ես այն ձևակերպեցի նոտարի մոտ: Այդ ես արեցի ի հեճուկս քո տանտիրոջ և ոչ թե քեզ համար:*

*Քո ԿՈՐՈ»*

*Եվ ծեր արվեստագետը, որը ճակատագրի անողոք հարվածները տարել էր ժպտալով և անհուզում, տեսել էր օտար ու հարազատ մարդկանց շատ ու շատ մահեր ու երբեք չէր արտասվել, այս անգամ չդիմացավ: Նա չկարողացավ մինչև վերջ կարդալ այդ փոքրիկ ու կենսաշունչ նամակը: Նրա հիվանդ աչքերը լցվեցին ուրախության, երախտագիտության և մարդկային սիրո ու հավատարմության արցունքներով:*



* * *

Իգուանա մողեսը ցամաքային ապրող է: Բայց վտանգի ժամանակ թաքնվում է ջրի մեջ և մնում է այնտեղ մոտ տասնհինգ րոպե, մինչև թշնամու հեռանալը:

Իսկ փոկերը շաբաթներով մնում են ծովում: Նույնիսկ կարող են քնել ջրի տակ: Անգիտակցաբար շարժելով լողաթևերը, փոկը բարձրանում է ջրի երես, օդ ներշնչում և փակ աչքերով սուզվում մինչև ջրի հատակը:

Սակայն ոչ ոք փոկից ավելի ջրի տակ մնալ չի կարող: Եթե ծովում փոկ տեսնեք, իմացեք, որ ափը մոտ է, տասնհինգ կիլոմետրից ոչ հեռու:

* * *

Վերջերս Տայլանդում սպիտակ փիղ էին բռնել: Սիամցիների դավանանքով, կենդանի սպիտակ փիղը երջանկություն է բերում: Եթե որևէ մեկը սպանի սպիտակ փղին, ամբողջ երկրին փորձանք կգա:

Սպիտակ փղերը չափազանց հազվադեպ են: Բավական է ասել, որ աշխարհի ոչ մի կենդանաբանական այգում սպիտակ փղեր չկան:

* * *

Բրազիլիայում ապրում է գորտի մի տեսակ: Ծերանալիս, նրա արտաքին չափերը ոչ թե մեծանում, այլ փոքրանում են: Տեղի բնակիչները այդ գորտերին անվանում են [illegible]: Դրանք 25 սանտիմետր երկարություն ունեն, իսկ երբ ծերանում են, նրանց երկարությունը հազիվ 5 սանտիմետրի է հասնում:

* * *

Երբեմն ձյունը դառնում է իսկական դժբախտություն: Որքան պիտի չարչարվեն աղբահավաքները և մաքրողները, որպեսզի խճուղիների ձյունը մաքրեն: Ինչեր ասես, որ չեն փորձում՝ այրող կամ քերող զանազան մեքենաներ: Բայց այդ բոլորը շատ թանկ են նստում:

Վերջերս գիտաշխատող Օսլովը նկարել է ֆանտաստիկ թվացող մի նկար: Խճուղով անցնում է մարդատար մի փոքրիկ մեքենա: Նրա ետևում ձյունը վեր է ածվում թեթև փաթիլների և քամին նրանց քշում է ճանապարհից հեռու:

Գաղտնիքը նրանում է, որ այդ մեքենան էլեկտրամագնիսական սարքավորում ունի, իսկ գետին ընկնող ձյան փաթիլները՝ դրական կամ բացասական լիցքավորում: Օգտագործելով փաթիլների՝ այդ փոքրիկ մագնիսների ձգողական կամ վանող ուժը, էլեկտրամագնիսական ալիքները կարող են շատ գործ կատարել. փոխել փաթիլների ուղղությունը, որպեսզի նրանք ոչ թե կամուրջի վրա իջնեն, այլ գետի մեջ, բացի այդ կարող են փափկացնել կարծրացած ձյունը:

## ԵՐԿԱՄՅԱ ԴՊՐՈՑԱԿԱՆԸ

Կորեացի կին Ունգ-Յոն Գիլը երկու տարեկան հասակում գրել է իր «Մանկիկ աստղերին» վերնագիրը կրող առաջին գիրքը: Գրել և կարդալ նա սովորել է, երբ եղել է ընդամենը յոթ ամսական, իսկ քայլել սկսել է հինգ ամսականում: Վեց ամսականում նա արդեն կանգնում էր, վազում էր և խոսում. կորեերեն՝ մայրենի լեզվով: Երբ նա արդեն մոտ երեք տարեկան էր, խոսում էր անգլերեն, գերմաներեն և չիներեն: Յոթ ամսականում նա սովորել է շախմատ խաղալ և մեծ ընդունակություններ է դրսևորել: Երկու և կես տարեկանում նա հաճախում է դպրոց 13 տարեկան երեխաների հետ և զարմանք պատճառում դասատուներին:



Լույս է տեսնում 1925 թվականից

# ՊԻՈՆԵՐ

№ 2 փետրվար 1968 թ.

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՀԱՆՐԱՊԵՏԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



Շապիկի առաջին էջը՝ նկ. ՌԱՖԻԿ ՀԱԿՈԲՅԱՆԻ



„Пионер“ на армянском языке. Адрес редакции: Ереван, ул. Кармир банаки, № 41.

Հասցեն՝ Երևան, Կարմիր բանակի փողոց, № 41, Հեռախոսներ՝ 2—44—83, 2—68—16, 2—59—06։

ՎՖ 06438։ Պատվեր՝ 140։ Տպաքանակ՝ 55000։ Տպագրական 3 մամուլ։ Ստորագրված է տպագրության 27/II 1968 թ.։ ՀՍՍՀ Մինիստրների սովետի մամուլի պետական կոմիտեի պոլիգրաֆարդյունաբերության գլխավոր վարչության Հ. Մեղապարտի անվան պոլիգրաֆկոմբինատ։ Երևան Տերյան փ. № 91։

Գինը՝ 10 կ.



## ՀԱՆԳՍՏԻ ԺԱՄԻՆ

### ԱՇԽԱՐՀԱԳՐԱԿԱՆ ԽԱՉԲԱՌ

1. Գետ ՍՍՀՄ-ում։ 2. Պետություն Աֆրիկայում։ 3. Քաղաք Պակիստանում։ 4. Լիճ ՍՍՀՄ-ում։ 5. Լիճ երեք պետությունների սահմանագլխին։ 6. Անապատ Աֆրիկայում։

Հարցերին ճիշտ պատասխանելու դեպքում, անկյունագծով դուք կկարդաք որևէ մայրցամաքի անունը։

Հարցական նշանը դրված է այն վայրի վրա, որ պետք է գրվի «Խաչբառի» համարակալված սյունակում։

Առաջարկ՝ ՎԻԿՏՈՐ ՊԵՏՐՈՍՅԱՆԻ




ՄԿՐՏԻՉ ԿՈՐՅՈՒՆ

### Հանելուկներ

Զի գործի, մինչև չթռչես ծայրը,
Սագի փետուրն է իր նախահայրը։
(Գրիչ)

* * *

Ես մի մարմին եմ թեև,
Ունեմ երեք տարբեր ձև։ (Ջուր)

# ԱՄՓՈՓՈՒՄ ԵՆՔ ՄԵՐ ՄՐՑՈՒՅԹԸ

Ավարտվեց հնարագետների և սրամիտների մրցույթը: Մրցույթին մասնակցեցին Երևանի, Հայաստանի բոլոր շրջանների, Վրաստանի, Ադրբեջանի, Աբխազիայի, Ուզբեկստանի հազարավոր պիոներ-դպրոցականներ: Նրանցից տասը հոգի՝ Վաչագան Մանուկյանը (Լենինական), Ռուբիկ Սարգսյանը (Արտաշատ), Մարինա Խաչատրյանը (Երևան), Գրիգոր Օգուչյանը (Երևան), Հովհաննես Բաբաեկյանը (Արտաշատ), Օխմա Սիմոնյանը (Երևան), Լյովա Ղարիբյանը (Երևան), Հովհաննես Նալբանդյանը (Լենինական), Էդվարդ Ղազարյանը (Երևան), Գագիկ Պողոսյանը (Երևան) պատասխանել են առաջարկված բոլոր հարցերին և վաստակել են ամենաբարձր միավորները (81–61): Նրանք պարգևատրվել են Ն. Զարյանի, Վ. Անանյանի, Գ. Բոյանի, Վ. Տալյանի, Հ. Ղուկասյանի գրքերով՝ հեղինակների մակագրությամբ:

Իսկ Արա Նազարյանը (Արտաշատ), Նորայր Մուրադյանը (Ադրբեջան), Արտյակ Արամեսյանը (Թալին), Վարդան Մնացականյանը (Կասն), Էդիկ Արփոյանը (Վրաստան), Վիլեն Բախշինյանը (Լեռնային Ղարաբաղ), Անահիտ Սիմոնյանը (Աշտարակ), Սուսաննա Թոփալյանը (Աբխազիա), Արմեն Քոչարյանը (Երևան) և Սամվել Մանուկյանը (Լենինական) պարգևատրվել են նվերներով:

Ճիշտ են պատասխանել նաև Սուսաննա Հովհաննիսյանը (Երևան), Կարինե Թավրոսյանը (Երևան), Համբարձում Եղոյանը (Անտոփա), Մարգարիտ Պողոսյանը (Վ. Թալին), Հովհաննես Գրիգորյանը (Արտաշատ), Թամարա Սարգսյանը (Վ. Թալին), Անդիկ Խաչատրյանը (Էջմիածին), Ստեփան Մարտիրոսյանը (Արթիկ), Հրաչիկ Բաբայանը (Սպիտակ), Սերգոմա Հարությունյանը (Երևան), Արարատ Հովհաննիսյանը (Ախպրեկով), Գևորգ Մարկոսյանը (Վրաստան), Հասմիկ Կարապետյանը (Արտաշատ), Նինել Բաբայանը (Լեռնային Ղարաբաղ), Լիլիթ Պետրոսյանը (Արտաշատ), Հարություն Վարդիկյանը (Աբխազիա), Սամվել Պետրոսյանը (Երևան), Կարինե Մանուկյանը (Երևան), Նարեկա Փիլոյանը (Վրաստան), Աշոտ Գևորգյանը (Սիսիան), Ռուբեն Պետրոսյանը (Երևան), Կարինե Ղահրամանյանը (Երևան), Էդվարդ Սողոմոնյանը (Ուզբեկստան), Արեգ Մկրտչյանը (Ադրբեջան), Քաջիկ Հովսեփյանը (Մեղրի), Գայանե Կարոյանը (Երևան), Վաչագան Կարապետյանը (Մեղրի), Սոնյա Ստեփանյանը (Երևան), Շողիկ Հովսեփյանը (Ալավերդի), և Գայանե Մալաքյանը (Ստեփանավան):

Մրցույթում շահած բոլոր երեխաները պարգևատրվել են խմբագրության հուշանվերով:

Տպագրում ենք մրցույթում առաջադրված բոլոր հարցերի ճիշտ պատասխանները.

**Արտանկարելիս ի՞նչ սխալներ են թույլ տվել** — Բեռնատար ավտոմեքենայի վարորդի բեղերը չկան, մեքենայի համարի քառակուսին դարձել է ուղղանկյուն քառանկյուն, մեքենայի թափքը երկու գծով է նկարված, աշտարակի պատուհանները չորսն են և ավելորդ գծով: Փոքրիկ աշտարակի տակի գիծը թեք է, մոտոցիկլետիստի և փողոցով անցնող տղայի գլխարկները փոքր են:

**Երկու կռունկ** — Այն կռունկը, որ երկու քայլ առաջ է կատարում և մեկ քայլ ետ, մյուսից առաջ կընկնի չորս քայլով:

**Ընկերուհիները** — Գոհար Սարգսյանը պարապում է դահուկով և լողով, Զվարթ Սարգսյանը՝ դահուկով ու մարմնամարզությամբ, Գոհար Սաֆարյանը՝ լողով և մարմնամարզությամբ:

**Աղավաղված պատկեր** — 1—Ե, 2—Ա, 3—Դ, 4—Բ, 5—Գ:

**Ո՞վ է ուժեղը** — Չորս շնիկներից ամենից ուժեղը պուդել Խուճուճն էր: Երկրորդ տեղը գրավեց տերյեր Տոպը, իսկ երրորդը՝ Բողարը: Վերջին տեղը գրավեց Շպից Անդադարը:

**Ռեբուս** — 1. «Ամբոխները խելագարված», 2. «Դանթեական առասպել»:

**Ո՞վ էր նա** — Ջուզեպե Վերդին էր:

**Ո՞ր ստեղծագործությունների համար** — Արամ Խաչատրյանը Լենինյան մրցանակի է արժանացել «Սպարտակ» բալետի համար: Պետական մրցանակներ է ստացել ջութակի կոնցերտի, երկրորդ սիմֆոնիայի, «Գայանե» բալետի և «Ստալինգրադյան ճակատամարտ» ֆիլմի երաժշտության համար:

**Պատժված հետաքրքրասիրություն** — Ընկեր Հովհաննիսյանը ծնվել է 1927 թվականին: Նա այժմ 40 տարեկան է: 1972 թվականին կլինի քառասունհինգ տարեկան:

**Երկու ջահ** — Պետք է գնել հինգերորդ և տասներորդ ջահերը:

**Բառաշղթա-խաչբառ** — 1. Մոսկվա: 2. Ապարան: 3. Նովիկով: 4. Վորոբյով: 5. Վոլնով: 6. Վլասով: 7. Վորոնին: 8. Նավակ: 9. Կերես: 10. Սասուն: 11. Տերսկոլ: 12. Լուսին: 13. «Սպարտակ»: 14. Կուչինսկայա: 15. Աստախովա: 16. Ալմետով: 17. Վոլեյբոլ: 18. «Լոռի»: 19. Իլյասով: 20. Վարդանյան:

**Ուղղահայաց** — 1. Մեդալ: 2. «Շիրակ»: 3. «Պամիր»: 5. Կուպին: 8. Նեյ: 10. Զող: 13. «Կայրաթ»: 14. Կուշնիր: 15. Շախմատ: 16. «Արարատ»: 21. Կոխ: 22. Լեպին: 23. Նիպակ: 24. Շախ: 26. Կրեեր:

**Հորիզոնական** — 4. Զենչիկ: 6. Պառ: 7. Կաց: 9. Մալյան: 11. Թենիս: 12. Տիտով: 17. Դանուկ: 18. «Նաիրի»: 19. Յաշին: 20. Գավաթ: 25. Հոկեյ: 28. Թիրախ: 29. Բրումել: 30. Փիղ: 31. Տալ: 32. Պետրիկ:

